## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78։



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 39-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան շահագործումից ազատագրեց ոչ միայն Ռուսաստանի միլիոնավոր աշխատավորական մասսաներին, այլև ազատության ուղիներ հարթեց ցարիզմի կողմից ճնշված ժողովուրդներին, այդ թվում նաև հայ ժողովրդին։*

*Հայաստանը ցարական Ռուսաստանի հետամնաց ագրարային գաղութն էր։ Հայ ժողովուրդը ենթարկվում էր ցարիզմի և ռազմա-ֆեոդալական իմպերիալիզմի սոցիալական և ազգային դաժան ճնշման։*

*Այդ պատճառով էլ ազատաբեր Հոկտեմբերի լույսը մեծ խանդավառությամբ ընդունեցին հայ, ինչպես և մյուս ճնշված ժողովուրդները։*

*Հայ ժողովուրդը ոգեշնչված Մեծ Հոկտեմբերի հաղթանակով, բոլշևիկների ղեկավարությամբ եռանդուն պայքարի ելավ Հայաս-*





տանում սովետական կարգեր հաստատելու համար։

Սակայն Անդրկովկասում հատուկ քաղաքական իրադրություն ստեղծվեց։ Տեղի բուրժուա-նացիոնալիստական պարտիաները և ռեակցիոն տարրերը անգլո-ամերիկյան իմպերիալիստների թելադրանքով, Անդրկովկասը Սովետական Ռուսաստանից անկախ հայտարարեցին և դարձան երկրամասի տնօրինողները՝ դաժան դատաստան տեսնելով ակտիվացող ռևոլյուցիոն շարժումների մասնակիցների հետ։ Նրանք 1918 թվականի մայիսին Վրաստանում, Ադրբեջանում և Հայաստանում ստեղծեցին առանձին-առանձին բուրժուա-նացիոնալիստական «անկախ կառավարություններ»։

1918—1920 թվականներին Հայաստանը գտնվում էր հայ բուրժուա-նացիոնալիստական պարտիայի՝ դաշնակցության և նրա անգլո-ամերիկյան տերերի իշխանության տակ։

Դաշնակ մաուզերիստների երկուս ու կես տարվա տիրապետությունը հայ ժողովրդին միայն չարիք ու դժբախտություն պատճառեց։ Դաշնակցական կառավարության խելակորույս քաղաքականության հետևանքով Հայաստանը ստրկական կախման մեջ ընկավ օտարերկրյա իմպերիալիստներից. երկիրը փաստորեն դարձավ նրանց գաղութը։ Դաշնակներն իրենց հակաժողովրդական, ավանտյուրիստական քաղաքականությամբ հայ ժողովրդին կանգնեցրին տնտեսական կատաստրոֆի, կուլտուրայի կործանման և ֆիզիկական ոչնչացման սպառնալիքի առաջ։ Երկրի արդյունաբերության համախառն արտադրանքը եթե 1913 թվականին կազմում էր 20 միլիոն 700 հազար ռուբլի, ապա 1919 թվականին այն կազմում էր ընդամենը մեկ միլիոն 700 հազար ռուբլի (1926—1927 թ.թ. գներով), այսինքն կրճատվել էր 12,2 անգամ։ Իսկ Հայաստանի էկոնոմիկայի հիմնական ճյուղը հանդիսացող գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1913 թվականի 65 միլիոն 800 հազար ռուբլուց 1919 թվականին կազմում էր 11 միլիոն 300 հազար ռուբլի կամ կրճատվել էր մոտ 6 անգամ, իսկ անասունների գլխաքանակը այդ նույն ժամանակաշրջանում կրճատվել էր 67 տոկոսով։ Երկրի էկոնոմիկայի ծայր աստիճանի քայքայվածության հետևանքով խիստ վատացավ ժողովրդի դրությունը։ Թանկությունը անասելի չափերի հասավ։ 1920 թվականի նոյեմբերին մեկ փութ ցորենն արժեր 35 հազար

ռուբլի, մեկ ֆունտ միսը՝ 2.000 ռուբլի, մեկ փութ կարտոֆիլը՝ 18 հազար ռուբլի, մեկ լիտր նավթը՝ 350 ռուբլի և այլն։ Սկսվեցին համատարած սով և հիվանդություններ։ Ամբողջ երկրում վխտում էին ընչազուրկ, մերկ ու սոված, անօթևան, հարյուր հազարավոր աշխատավորներ։

Սովը, համաճարակը, ցուրտը, պատերազմները ժողովրդին հնձում, գերեզման էին իջեցնում։ Միայն 1919 թվականի 6 ամսում սովից ու համաճարակներից մեռան 180 հազար մարդ։

Այս ամենի հետ մեկտեղ Հայաստանը դարձել էր մշտական պատերազմների, ընդհարումների թատերաբեմ, երկրում տիրում էր կատարյալ անարխիա, չկար կյանքի և գույքի ապահովություն, օրենքի փոխարեն իշխում էր դաշնակ մաուզերիստների, խմբապետների բիրտ կամայականությունը։ Կողոպուտն ու բռնությունները մասսայական բնույթ էին կրում։

Այսպիսով, դաշնակների անփառունակ տիրապետության տարիներին Հայաստանը դարձել էր սովի ու համաճարակների, որբերի ու արցունքի, գաղթի ու մուրացկանների, մշտական պատերազմների և անօրինու-



թյունների երկիր։ Երկրի տնտեսական և կուլտուրական կյանքը փաստորեն կանգ էր առել, ժողովուրդը կործանվում էր։

Հայ ժողովրդի վիճակը օրհասական էր։ Կործանման ահավոր սպառնալիքից ազատվելու համար աշխատավորական լայն մասսաները, կոմունիստների ղեկավարությամբ, ռևոլյուցիոն պայքարի էին ելնում տապալելու դաշնակների անտանելի լուծը և երկրում սովետական իշխանություն հաստատելու համար։ Սակայն այդ փորձերը խեղդվում էին արյան մեջ։

Միայն 1920 թվականի նոյեմբերի 29-ին, սրանից 39 տարի առաջ, Հայաստանի աշխատավորները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ տապալեցին դաշնակների արյունոտ լուծը և հաստատեցին սովետական իշխանություն։ Համաշխարհային պրոլետարիատի առաջնորդ հանճարեղ Լենինը ջերմագին ողջույն հղեց իմպերիալիզմի ճնշումից, կործանման վտանգից ազատված հայ ժողովրդին։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակն էր, Սովետական Հայաստանը՝ Մեծ Հոկտեմբերի ծնունդը։ Սովետական

կարգերի հաստատումը Հայաստանում շրջադարձային կետ հանդիսացավ հայ բազմաչարչար ժողովրդի կյանքում։ Նա վերջնականապես ազատվեց սոցիալական և ազգային ճնշումից, փրկվեց ֆիզիկական ոչնչացման վտանգից։ Բազմադարյան հայ ժողովուրդը ձեռք բերեց ազգային վերածննդի լայն հնարավորություն. Նա ստեղծեց իր պետությունը և պատմության մեջ առաջին անգամ ստացավ իսկական ազատություն և անկախություն։

Հայ ժողովուրդը սովետական մյուս ժողովուրդների եղբայրական օգնությամբ սկսեց իր նոր կյանքի կառուցումը։ Նա ձեռնամուխ եղավ անցյալից ծանր ժառանգություն մնացած՝ քայքայված, ավերված էկոնոմիկայի վերականգնմանն ու զարգացմանը, կուլտուրական շինարարությանը։ Լենինի ցուցումով Սովետական Ռուսաստանը որպես օգնություն ազատագրված Հայաստանին ուղարկեց ավելի քան 3 միլիարդ ռուբլի և առաջին անհրաժեշտության շատ ապրանքներ, գործարանային սարքավորումներ, գյուղատնտեսական գործիքներ և այլն։

Սովետական բազմազգ ժողովուրդների և առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի եղբայրական, անշահախնդիր օգնության շնորհիվ



հայ ժողովուրդը առասպելական փյունիկ թռչունի պես վերակենդանացավ։ Կարճ ժամանակամիջոցում վերականգնվեց երկրի քայքայված արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը և ծավալվեց էկոնոմիկայի և կուլտուրայի բուռն զարգացումը։

Հայաստանը սովետական մյուս ռեսպուբլիկաների հետ միասին հաստատապես կանգնեց սոցիալիզմի կառուցման ուղու վրա։ Տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծ առավելությունների, Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ Հայաստանը պատմականորեն կարճ ժամանակաշրջանում դարձավ Սովետական Միության ծաղկող ռեսպուբլիկաներից մեկը՝ բարձր զարգացած արդյունաբերություն, մեքենայացված գյուղատնտեսություն և բարձր կուլտուրա ունեցող ռեսպուբլիկա։

Սովետական իշխանության 39 տարիների ընթացքում վիթխարի զարգացման է հասել Հայաստանի էկոնոմիկան։ Հայաստանն իրավամբ համարվում է ինդուստրիալ-ագրարային ռեսպուբլիկա։ Անցյալում համարյա արդյունաբերություն չունեցող Հայաստանը այսօր դարձել է մեր երկրի քիմիական, մեքենաշինական, լեռնահանքային, էներգետիկ,

տեքստիլ, սննդի արդյունաբերության խոշոր կենտրոններից մեկը։ Ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում ստեղծվել են հարյուրավոր մեծ ու փոքր արդյունաբերական ձեռնարկություններ, կառուցվել են բազմաթիվ հիդրոկայաններ։

Ռեսպուբլիկայի գործարաններն ու ֆաբրիկաները տալիս են արդյունաբերական արտադրանքի հարյուրավոր կարևորագույն տեսակներ՝ պղինձ, մոլիբդեն, ալյումին, շրջիկ էլեկտրակայաններ, տրանսֆորմատորներ, գեներատորներ, հաստոցներ, կոմպրեսորներ, պոմպեր, էլեկտրաճշգրիտ մեքենաներ, ավտոդողեր ու ավտոպահեստամասեր, սինթետիկ կաուչուկ, պլաստմասսային իրեր, ցեմենտ, հրակայուն աղյուս, քիմիական պարարտանյութեր և այլն։

Հայաստանի արդյունաբերության բարձր մակարդակի մասին է խոսում թեկուզ այն փաստը, որ նրա արտադրած ապրանքները արտահանվում են աշխարհի 30 երկրներ։ Չեխոսլովակիա, Հարավսլավիա, Աֆղանստան, Ֆինլանդիա, Հնդկաստան, Չինաստան, Թուրքիա, Իսլանդիա, Լիբանան, Ցեյլոն, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկա և այլ երկրներ են ուղարկվում շարժական



էլեկտրակայաններ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, էլեկտրաչափիչ գործիքներ, կաբել, հանքային ջրեր, զարթեցուցիչ ժամացույցներ, գինի, կոնյակ, գործվածք, ծխախոտ և շատ ուրիշ ապրանքներ։

Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրության մակարդակով Հայաստանն այսօր առաջ է անցել կապիտալիստական շատ երկրներից։ Հայաստանի 500-ից ավելի արդյունաբերական ձեռնարկությունները 1958 թվականին թողարկեցին մի քանի միլիարդ ռուբլու արտադրանք։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքի ծավալը 1958 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, մեծացավ 55 անգամ։ Հատկապես մեծ զարգացման է հասել էներգետիկ արդյունաբերությունը։ 1958 թվականին Հայաստանի էլեկտրակայանները մեկ օրում արտադրել են մոտ 2 անգամ ավելի էլեկտրաէներգիա, քան արտադրվել է ամբողջ 1913 թվականին։ Մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Հայաստանն անցել է Ֆրանսիայից, Ճապոնիայից, Իտալիայից, իսկ Իրանին և Թուրքիային գերազանցում է 20 անգամ։

Ներկայումս ռեսպուբլիկայի բոլոր բնա-

կավայրերի 90 տոկոսը էլեկտրիֆիկացված են։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը 1958 թվականին կատարվեց 104,3 տոկոսով։ Արդյունաբերության համախառն արտադրանքը 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, աճեց 71 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 31 տոկոսով։

Սովետական Հայաստանի 39-րդ տարին համընկավ ՍՄԿՊ XXI համագումարի և ՍՄԿՊ Հունիսյան պլենումի պատմական որոշումների կենսագործման համար երկրում ծավալված համաժողովրդական հուժկու շարժման հետ։

Հայաստանի աշխատավորները ոգեշնչված այդ որոշումներով նորանոր հաջողություններ են ձեռք բերում տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում։

Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1959 թվականի առաջին կիսամյակի համախառն արտադրանքի պլանը, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, կատարեց 104 տոկոսով, ապահովելով արտադրության ծավալի 12 տոկոս



աճ։ Կիսամյակի ընթացքում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունն աճել է 6 տոկոսով, գերակատարվել է արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքը, որի շնորհիվ ստացվել է 17 միլիոն ռուբլու արտապլանային խնայողություն։ Հայաստանի արդյունաբերությունը ժամկետից շուտ՝ սեպտեմբերի 21-ին, կատարեց համախառն արտադրանքի արտադրության նաև ինն ամսվա պլանը։ Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ արտադրանքի թողարկումը աճել է 12 տոկոսով, իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 7 տոկոսով։ Գերակատարվել են ավտոդողերի, մետաղահատ հաստոցների, կենտրոնախույս պոմպերի, կոմպրեսորների, կաուչուկի, ռաֆինացված ու սև պղնձի և արտադրանքի կարևորագույն շատ այլ տեսակների թողարկման պլանները։

Այս տարի միայն մեքենաշինական և սարքաշինական արդյունաբերության գծով շահագործման հանձնվեց 6 նոր գործարան. դրանք են՝ էլեկտրակերամիկական և կիսահաղորդիչների, Լենինականի էլեկտրատեխ-

նիկական ու սարքաշինական, Սևանի գործադրիչ մեխանիզմների, Արզնու ճշգրիտ քարերի գործարանները։ Շուտով շարք կմտնեն ևս 2 նոր գործարաններ։ Ընթացիկ տարում խոշոր շինարարական-մոնտաժային աշխատանք է ծավալվել Աղստաֆա—Երևան գազամուղի անցկացման համար։ Շինարարները պարտավորվել են ժամկետից շուտ 1960 թվականի սկզբին գազ տալ Երևանին։ 1960—1961 թվականներին գազ կստանան Երևան, Լենինական, Կիրովական, Դիլիջան քաղաքները և գազամուղի մագիստրալային գծի մոտ գտնվող շրջկենտրոններն ու գյուղերը։

Ընթացիկ տարում ուժգին թափով շարունակվում է Աթարբեկյանգէսի և Երևանգէսի շինարարությունը, Աթարբեկյանի հիդրոշինարարները պարտավորվել են 1959 թվականի նոյեմբերի 7-ին՝ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 42-րդ տարեդարձի օրը շահագործման հանձնել հիդրոկայանը։

ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները հաջողությամբ կենսագործելու համար երկրում ծավալվել է համաժողովրդական մեծ շարժում՝ «աշխատել, սովորել և ապրել կոմունիստաբար» նշանաբանով։ Երկրի հազարավոր բրիգադաներ, ցեխեր, կոլեկտիվ-



ներ պայքարում են կոմունիստական աշխատանքի բրիգադայի և հարվածայինի կոչում ստանալու համար։ Այդ շարժումը լայն արձագանք գտավ նաև մեր ռեսպուբլիկայում։ Ռեսպուբլիկայի ձեռնարկություններում լայնորեն արձագանքեցին նաև Վալենտինա Գագանովայի հայրենասիրական նախաձեռնությանը։ Շատ ձեռնարկություններում արտադրության լավագույն մարդիկ, հմուտ կազմակերպիչներ Գագանովայի օրինակով աշխատանքի են անցնում ետ մնացող տեղամասերը առաջավորների շարքը դուրս բերելու ազնիվ ձգտումով։

Վերջին տարիներին ռեսպուբլիկայում խոշոր առաջընթաց քայլ է կատարվել նաև տեխնիկական պրոգրեսի ասպարեզում։ Թողարկվող մեքենաների ու սարքերի կատարելագործման և դրանց նորագույն տեսակների ստեղծման ուղղությամբ զգալի աշխատանք է կատարվում։ Միայն 1958 թվականին մշակվել և սերիական արտադրության համար պատրաստվել են 60 տեսակի մեքենա և սարք, որոնցից 17-ը առաջին անգամն են արտադրվում ՍՍՌՄ-ում։

1959 թվականի առաջին կիսամյակում ստեղծվել են 16 նոր տիպի մեքենաներ և սարքեր։ Ժողտնտխորհի կազմակերպումից

հետո արդյունաբերական ձեռնարկություններում ներդրվել են ավելի քան 12 հազար ռացիոնալիզատորական առաջարկություն, տեխնիկական կատարելագործումներ, գյուտեր, որոնց տարեկան տնտեսական էֆեկտը հասնում է ավելի քան 90 միլիոն ռուբլու։ 1958 թվականին ռեսպուբլիկայում եղել է 12.240 ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկություն, որից արտադրության մեջ ներդրվել է 7.500-ը՝ մոտ 53 միլիոն ռուբլի արդյունավետությամբ։ Ռեսպուբլիկայի միայն մեքենաշինական և հաստոցաշինական արդյունաբերության մեջ 1956—1958 թվականներին ներդրվել է 1.500 ռացիոնալիզատորական առաջարկություն և ստացվել տարեկան 7 միլիոն ռուբլու խնայողություն։

Ռեսպուբլիկայի էներգոսիստեմում մտցվել է ավտոմատացում և էլեկտրակայանների ու էլեկտրացանցերի հեռուստակառավարում։ Իրագործվել է Արզնիգէսի և Գյումուշգէսի ամբարտակների փականների դիստանցիոն կառավարումը։ Պայմաններ են ստեղծվում մոտակա տարիներին անցնել բոլոր հիդրոկայանների ավտոմատ կառավարմանը՝ առանց սպասարկող անձնակազմի։

Ռեսպուբլիկայի ձեռնարկություններում



ստեղծվել են գիտահետազոտական ինստիտուտներ, կենտրոնական ինստիտուտների ֆիլիալներ, կոնստրուկտորական բյուրոներ և լաբորատորիաներ, որոնք մեծ աշխատանք են կատարում տեխնիկական պրոգրեսի ուղղությամբ։

Ռեսպուբլիկայի աշխատավորները միահամուռ կերպով հավանություն տվեցին ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի (1959 թ.) որոշումներին, որոնք ուղղված են մեր երկրի հետագա տեխնիկական պրոգրեսին։ Տեխնիկական պրոգրեսը յոթնամյա պլանի կատարման վճռական պայմանն է, աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմքը։ Այդ պատմական որոշումներից ելնելով ռեսպուբլիկայում խոշոր աշխատանք պետք է կատարվի հին տեխնիկան, հին կոնստրուկցիաները նորերով փոխարինելու, արտադրության մեքենայացման և ավտոմատացման ուղղությամբ։

Յոթնամյա պլանը զարգացման հոյակապ հեռանկարներ է բացում ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Ժողովրդական տնտեսության մեջ կներդրվի 12 միլիարդ ռուբլի, որը 2,3 անգամ ավելի է, քան նախորդ յոթնամյակում, իսկ արդյունաբերության համախառն արտա-

դրանքի թողարկումը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կաճի 2,2 անգամ։

Արդյունաբերական ձեռնարկությունները 1965 թվականին տարեկան կթողարկեն ավելի քան 16 միլիարդ ռուբլու արտադրանք, այսինքն յոթնամյակում այն կավելանա 9 միլիարդ ռուբլով։ Հատկապես մեծ զարգացում կունենա գունավոր մետաղների, սինթետիկ նյութերի արտադրությունը, ճշգրիտ մեքենաշինությունն ու սարքաշինությունը։ Կկառուցվեն բազմաթիվ նոր գործարաններ, ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ և այլն։

Յոթնամյակում ծանր արդյունաբերության ճյուղերի վիթխարի զարգացման հետ մեկտեղ խոշոր չափով կզարգանա նաև թեթև և սննդի արդյունաբերությունը։ Վերջերս պարտիան ու կառավարությունը հատուկ միջոցառումներ մշակեցին երկրում կուլտուր-կենցաղային և տնտեսական գործածության ապրանքների արտադրությունն ավելացնելու, ասորտիմենտն ընդլայնելու և որակը բարելավելու մասին, այն հաշվով, որ 1959—1965 թվականների համար սահմանված առաջադրանքները կատարվեն ժամկետից շուտ և բնակչությանը վաճառքի հանվեն ավելի շատ ու բարձրորակ հեռուստացույցեր, սառցա-



րաններ, լվացքի մեքենաներ, փոշեծծիչներ, կարի մեքենաներ, ճենապակե-հախճապակե ամանեղեն, հեծանիվներ և այլ ապրանքներ։ Այդ ուղղությամբ զգալի աշխատանք կկատարվի Հայաստանի թեթև արդյունաբերության ձեռնարկություններում։

Սովետական ժողովուրդը մեծագույն խանդավառությամբ պայքարում է XXI համագումարի պատմական որոշումների կենսագործման համար։ Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները պարտավորվել են յոթնամյա պլանը կատարել 6 տարում՝ 1964 թվականին։

⁂

Սովետական իշխանության տարիներին, կոլտնտեսային կարգի հաղթանակի շնորհիվ հիմնովին կերպարանափոխվեց հայ գյուղը։ Խոշոր զարգացման են հասել գյուղատնտեսության բոլոր կարևոր ճյուղերը. գյուղի աշխատավորների համար ստեղծվեց ունևոր, բարեկեցիկ, կուլտուրական կյանք։ Սովետական իշխանության անցած տարիներին Հայաստանի գյուղատնտեսության արտադրությունն ավելացել է ավելի քան 3,5 անգամ։ Եթե մինչև 1920 թվականը Հայաստանի գյուղերը զրկված էին էլեկտրաէներգիայից և



չկար ոչ մի գյուղական էլեկտրակայան, ապա այժմ կա 27 գյուղական էլեկտրակայան։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 90 տոկոսը էլեկտրիֆիկացված է։ 1960 թվականին Հայաստանում չի լինի որևէ բնակավայր առանց էլեկտրականության։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ աշխատում են բարձրագույն և միջնակարգ կրթությամբ 6.450 մասնագետ։

Կոլտնտեսությունների նախագահների 58,4 տոկոսը ունեն բարձրագույն և միջնակարգ կրթություն, 802 նախագահներից 161-ը գյուղատնտեսության մասնագետներ են։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատում են 1.140 գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ և անասնաբույժներ։

Գյուղատնտեսության բնագավառի հաջողությունները շատ խոշոր են հատկապես վերջին 5—6 տարում։ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության մշակած գյուղատնտեսության շեշտակի վերելքի մեծ ծրագրի իրագործումը հիանալի արդյունք տվեց։

1958 թվականին ռեսպուբլիկայում հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունը կազմեց 9,5 ցենտներ,



կամ 2,3 ցենտներով ավելի քան 1953 թվականին։ Բամբակի միջին բերքատվությունը հեկտարից կազմեց 25,1 ցենտներ, կամ 4,3 ցենտներով ավելի քան 1953 թվականին։ 1958 թվականին հավաքվեց 35 հազար 800 տոննա բամբակ, որը 1965 թվականի համար սահմանված մակարդակից ավելի է։ Նույն այդ հինգ տարիների ընթացքում շաքարի ճակնդեղի արտադրության մեկ հեկտարի բերքատվությունը հասավ 248 ցենտների կամ ավելացավ 84 ցենտներով, բանջարեղենի մեկ հեկտարի բերքատվությունը աճեց 2,2 անգամ, իսկ կարտոֆիլինը՝ 1,4 անգամ։ Այդ նույն ժամանակամիջոցում մեծ հաջողություններ եղան նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության այնպիսի կարևոր ճյուղերի բնագավառում, ինչպիսին է անասնապահությունը, խաղողագործությունն ու պտղաբուծությունը։ Խաղողի մեկ հեկտարի բերքատվությունը ավելացավ 13,2 ցենտներով, իսկ պտուղներինը՝ 4,1 ցենտներով։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը հինգ տարում ավելացավ մոտ 24 տոկոսով, այդ թվում կովերինը՝ ավելի քան 36 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 32,3 տոկոսով և խոզերինը՝ 16,4 տոկոսով։ Կոլտնտեսություններում մեկ կո-

վի միջին կաթնատվությունը 1958 թվականին հասավ 1428 կիլոգրամի, մեկ ոչխարի միջին բրդատվությունը՝ 2,4 կիլոգրամի։

Անասունների գլխաքանակի աճի և նրանց մթերատվության բարձրացման շնորհիվ 1953 թվականի համեմատությամբ, 1958 թվականին ռեսպուբլիկայում մսի արտադրությունը կենդանի քաշով (չհաշված քաշաճը) ավելացավ 1,3 անգամ, կաթինը՝ 1,7, բրդինը՝ 1,4, ձվինը՝ 1,5 անգամ։

Գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ավելացման շնորհիվ 1958 թվականին ռեսպուբլիկան ժամկետից շուտ կատարեց և գերակատարեց գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանները։ Կոլտնտեսությունների դրամական եկամուտները 1958 թվականին հասան 950 միլիոն ռուբլու, այսինքն 1953 թվականի մակարդակը գերազանցեցին 417 միլիոն ռուբլով, կամ 80 տոկոսով։ Միայն 1958 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսականների դրամական եկամուտները, նախորդ տարվա համեմատությամբ, աճեցին մոտ 25 տոկոսով։

Վերջին հինգ տարում ռեսպուբլիկայի



գյուղատնտեսությունը ստացավ 1.257 տրակտոր և 740 կոմբայն։

Գյուղատնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերած աչքի ընկնող հաջողությունների համար Հայաստանը ՍՍՌՄ Գերագույն Սովետի 1958 թվականի դեկտեմբերի 29-ի Հրամանագրով պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Հայաստանի պարգևատրվելը Լենինի շքանշանով և 1959 թվականի հուլիսին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ ընկ. Կ. Ե. Վորոշիլովի Հայաստան այցելելը՝ շքանշանի հանձնման կապակցությամբ, պատմական խոշոր իրադարձություն էր։

Մեր կոլտնտեսություններն ու սովխոզները հաջողությամբ սկսեցին յոթնամյակի առաջին տարին՝ 1959 թվականը։ Կենսագործելով ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները հաջողությամբ ավարտեցին գարնանացանը, զգալիորեն ընդարձակեցին եգիպտացորենի և կերային մյուս կուլտուրաների ցանքատարածությունները։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, զգալիորեն աճել է մթերատու անասունների գլխաքանակը, ա-

վելացել են անասնաբուծական մթերքների արտադրությունը և վաճառքը պետությանը։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները այս տարվա գարնանը գցեցին 2738 հեկտար պտղատու և խաղողի նոր այգիներ, ցանվեց 22,4 հազար հեկտար եգիպտացորեն։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում մսի գնման կիսամյա պլանը կատարվեց 106 տոկոսով, կաթինը՝ 120, բրդինը՝ 101, ձվինը՝ 111 տոկոսով։ 1959 թվականի առաջին կիսամյակում ամբողջ ռեսպուբլիկայում պետությանը հանձնվել ու վաճառվել է, 1958 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, 33 տոկոսով ավելի միս, 8 տոկոսով ավելի կաթ, 2 տոկոսով ավելի բուրդ և 9 տոկոսով ավելի ձու։

Յոթնամյակում զարգացման մեծ հեռանկարներ ունի նաև Հայաստանի գյուղատնտեսությունը։ Այն կմասնագիտանա անասնաբուծության, խաղողագործության ու պտղաբուծության ընդլայնման, ինչպես նաև տեխնիկական կուլտուրաների ու բանջարեղենի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ։ Մեծ թռիչք կկատարվի մսի,



կաթի, բրդի, ու ձվի արտադրության ասպարեզում։

Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները սոցմրցությամբ պարտավորվել են բամբակի արտադրության 1965 թվականի համար պլանավորված մակարդակին հասնել ընթացիկ տարում, ճակնդեղինը՝ 1960 թվականին, ծխախոտինը և բանջարեղենինը՝ 1961 թվականին, խաղողինը՝ 1964 թվականին, կաթի ու ձվի արտադրության յոթնամյա պլանը կատարել 1962 թվականին, մսինն ու բրդինը՝ 1963 թվականին։ Գյուղատնտեսության ընթացիկ տարվա հաջողությունները իրավունք են տալիս ասելու, որ այդ պարտավորությունները կկատարվեն։

Ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին, մեր ռեսպուբլիկայի աշխատավորները մեծ ոգևորությամբ ընդունեցին այս տարվա նոյեմբերին-դեկտեմբերին ՍՄԿՊ Կենտկոմի պլենում հրավիրելու մասին հաղորդագրությունը։ Այդ պլենումը քննարկելու է սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի XXI համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի (1958 թ.) որոշումների կենսագործման միջոցառում-

ների հարցը։ Դա մեծ իրադարձություն կլինի սովետական ժողովրդի, մանավորապես գյուղատնտեսության բնագավառի աշխատողների կյանքում։ Երկրում համաժողովրդական մրցություն է ծավալվել այդ պլենումը արտադրական նվաճումներով դիմավորելու համար։

Մեր երկրի էկոնոմիկայի բուռն զարգացման շնորհիվ խիստ բարձրացել է ժողովրդի նյութական և կուլտուրական բարեկեցությունը։ Հայաստանում 1958 թվականին ընդհանուր ապրանքաշրջանառությունը 42,1 տոկոսով գերազանցեց 1955 թվականի ապրանքաշրջանառության մակարդակը և տարեվերջին կազմեց 4 միլիարդ 288 միլիոն ռուբլի։ Տարեցտարի աճում է բանվոր-ծառայողների և կոլտնտեսականների ռեալ եկամուտները։ 1958 թվականին պետության միջոցներից վճարվել են միայն կենսաթոշակ 327 միլիոն ռուբլի։

Ռեսպուբլիկայում, հատկապես վերջին տարիներին, ինչպես և ամբողջ երկրում, ծավալվել է ուժեղ բնակարանային շինարարություն։ 1958 թվականին պետության միջոցներով կառուցվեցին և շահագործման հանձնվեցին 274 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Բացի դա, քաղաքային բնակչությունը



իր միջոցներով և վարկով կառուցեց 156 հազար քառակուսի մետր մակերեսով բնակելի տներ։ Այս ամենի շնորհիվ բնակելի տարածության աճը նախորդ տարվա համեմատությամբ 60 տոկոսով ավելի էր։ 1958 թվականին գյուղերում կառուցվեցին 10 հազար 400 տուն։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում շահագործման հանձնվեց 115 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն կամ 54 հազար քառակուսի մետրով ավելի, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։

Յոթնամյակում բնակարանային շինարարության համար ծախսվելու է ավելի քան 3 միլիարդ ռուբլի։ Պետության միջոցներով կառուցվելու և շահագործման է հանձնվելու 2 միլիոն 328 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Անհատական շինարարության գծով կառուցվելու է 85 հազար անհատական բնակելի տուն։

Բնակչության նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման, պրոֆիլակտիկ միջոցառումները ժամանակին անցկացնելու շնորհիվ ռեսպուբլիկայում իսպառ վերացել են անցյալի այնպիսի մասսայական հիվանդություններ, ինչպիսիք են մալարիան, ծա-

ղիկը, տիֆը։ Խիստ նվազել են մյուս վարակիչ հիվանդությունները։ Ընդհանուր մահացությունը խիստ պակասել է, իսկ ծննդաբերությունը զգալի չափով աճել։

Հայաստանը 1926 թվականին ուներ մոտ 882 հազար բնակիչ, իսկ 1959 թվականին՝ մեկ միլիոն 768 հազար բնակիչ։ 1926 թվականին 64 հազար բնակչություն ունեցող Երևան քաղաքը այժմ ունի ավելի քան կես միլիոն բնակիչ։

Վիթխարի չափով մեծացել է ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանը, որն իր մեջ է առել մի շարք բնակավայրեր, այդ թվում Քանաքեռը, Շահումյան ավանը, որոնք մի ժամանակ քաղաքից զգալի հեռավորության վրա էին գտնվում։ Երևանը դարձել է ՍՍՌՄ-ի խոշոր քաղաքներից մեկը։

Սովետական իշխանության տարիներին բարգավաճել, իսկական ծաղկում է ապրել հայ ժողովրդի կուլտուրան, գիտությունը, գրականությունն ու արվեստը։

1913 թվականին Հայաստանում կար 458 դպրոց (հաշված նաև Ղարսի մարզը)։ դաշնակների տիրապետության ժամանակ դըպրոցների թիվը պակասեց։ 1958—59 ուստարում ռեսպուբլիկայում կար 1.373 դպրոց 295 հազար աշակերտով։ Այժմ Հայաստա-



նում ավելի շատ ուսուցիչներ կան, քան 1919 թվականին աշակերտներ կային։ Հայաստանում ամեն մի 1.000 մարդուն ընկնում է 200 սովորող։ Այդ տեսակետից Հայաստանը առաջ է անցել Անգլիայից, Ֆրանսիայից, Իտալիայից, էլ չենք խոսում Թուրքիայի և Իրանի մասին, որտեղ թագավորում է խավարն ու տգիտությունը, ուր միլիոնավոր երեխաներ զրկված են դպրոց գնալու հնարավորությունից։

Այս ուսումնական տարվանից դպրոցը ոտք դրեց իր զարգացման նոր փուլը, գործողության մեջ դրվեց դպրոցի վերակառուցման օրենքը։ Դրանով ուսուցումը սերտորեն կապվում է կյանքին և աճող սերնդին տրվում է բավարար գիտելիքներ կոմունիզմի ծավալուն կառուցմանը ակտիվորեն մասնակցելու համար։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են 174 տարրական, 685 ութամյա, 318 արտադրական ուսուցմամբ հանրակրթական աշխատանքային պոլիտեխնիկական միջնակարգ, այդ թվում 12 գիշերօթիկ դպրոցներ։ Բացի այդ, գործում են քաղաքային երեկոյան (հերթափոխային) և գյուղական երեկոյան (սեզոնային) հանրակրթական 195 միջնակարգ, ինչպես նաև տասնյակ հեռակա միջնակարգ դպրոցներ։

Հայաստանը աննախընթաց զարգացման է հասել բարձրագույն կրթության ասպարեզում։ 1959 թվականին ռեսպուբլիկայի 11 բուհերը, 37 տեխնիկումներն ու այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները, ուր սովորում են ավելի քան 29 հազար մարդ, տվեցին ավելի քան 7 հազար երիտասարդ մասնագետներ, այդ թվում 2.200 ինժեներներ ու տեխնիկներ, 1.800 գյուղատնտեսության մասնագետներ, 1.800 մանկավարժներ և ավելի քան 500 բժշկական աշխատողներ։ Անցյալում ոչ մի բուհ, ոչ մի գիտական կենտրոն չունեցող Հայաստանը այսօր ունի Գիտությունների ակադեմիա։ Ռեսպուբլիկայի 65 գիտահետազոտական հիմնարկներում և ինստիտուտներում աշխատում են 3 հազարից ավելի գիտական աշխատողներ։ Մեր ժողովուրդը հպարտանում է այնպիսի գիտնականներով, ինչպիսին է Վիկտոր Համբարձումյանը, որը իր գիտելիքները նվիրաբերում է ամբողջ մարդկությանը։ Հանրահայտ են դարձել գիտնականներ Ալիխանյան եղբայրների, Ս. Մերգելյանի և շատ ուրիշ գիտնականների անունները։

Մեծ են սովետահայ գրականության ու արվեստի նվաճումները։ Սովետահայ գրող-



ները, արվեստագետները ստեղծել են բարձրարժեք գեղարվեստական գործեր, որոնք բարձր գնահատականի են արժանացել։ Շատ գրողների ստեղծագործություններ թարգմանվել են սովետական և արտասահմանյան ժողովուրդների լեզուներով։

Մեծ ճանաչում ունեն սովետահայ երաժշտությունն ու նկարչությունը, օպերային և թատերական արվեստը։

Սովետահայ շատ գրողներ, կոմպոզիտորներ, նկարիչներ, արտիստներ հայտնի են ինչպես սովետական, այնպես էլ արտասահմանյան ժողովուրդներին։

Հայաստանը ծածկված է կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ ցանցով։ Ռեսպուբլիկայում գործում են 52 շրջանային և քաղաքային կուլտուրայի տուն, 984 ակումբ, 20 թանգարան և տուն-թանգարան, 623 ինքնուրույն գրադարան, 81 շրջիկ կինո, 191 ստացիոնար կինոկետ, շրջանային կինոթատրոններ, 5 միջշրջանային թատրոն։

Ներկայումս Հայաստանում հրատարակվում են 90-ից ավելի թերթեր, 60 ամսագիր և պարբերական այլ հրատարակություններ։ 1913 թվականի համեմատությամբ թերթերի թիվը ավելացել է 16, ամսագրերինը՝ 30 անգամ։

*Բնակչության յուրաքանչյուր 1.000 շնչին ընկնում է 326 օրինակ թերթ և ամսագիր։ 1958 թվականին ռեսպուբլիկայում հրատարակվեց մոտ 7 միլիոն 350 հազար տպաքանակ գիրք։*



*Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի նվաճումները շատ մեծ են։ Դրանք բազմապատկվում են տարեցտարի։ Այժմ Հայաստանի աշխատավորները սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում չթուլացող ջանքերով կենսագործում են ՍՄԿՊ XXI համագումարի մշակած մեծ ծրագիրը՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ծրագիրը, որի շնորհիվ է՛լ ավելի կհզորանա մեր Մեծ Հայրենիքը, է՛լ ավելի բարեկեցիկ կդառնա սովետական ժողովրդի կյանքը։*

---

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ՀՐԹԻՌՆԵՐԸ

Դոցենտ Բ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

*Ընդամենը երկու տարի է անցել այն օրից, երբ Սովետական Միությունից առաջին արհեստական արբանյակի արձակմամբ հիմք դրվեց մարդու կողմից տիեզերքի նվաճման դարաշրջանին։ Այդ ժամանակամիջոցում արձակվեցին նոր՝ ավելի մեծ կշռով ու գիտական հարուստ սարքավորումներով արբանյակներ։*

*1959 թվականի հունվարի 2-ին գիտության ու տեխնիկայի զարգացման պատմության մեջ մի նոր հուժկու թռիչք կատարվեց. Սովետական Միությունը արձակեց առաջին տիեզերական հրթիռը։*

*Եթե որևէ մարմին բարձրացվի մի քանի հարյուր կիլոմետր, ուր մթնոլորտի խտությունը բավականին փոքր է, և նրան Երկրի մակերևույթին զուգահեռ տրվի մեկ վայրկյանում մոտ 8 կմ. արագություն, ապա այդ մարմինը կսկսի Երկրի շուրջը պտտվել*

շրջանագծով, դառնալով արհեստական արբանյակ։ Այդ արագությունը կոչվում է առաջին տիեզերական արագություն։ Եթե մարմնին հաղորդվի ավելի մեծ արագություն, ապա նա կսկսի պտտվել էլիպսով, որի ձգվածության մեծությունը կախված կլինի արագության չափից։ Մարմնի արագությունը վայրկյանում 11,1 կմ. լինելու դեպքում շարժման էլիպսն այնքան է ձըգվում, որ նրա երկրահեռ կետը անցնում է նույնիսկ Լուսնից։ Բայց այդ բոլոր դեպքերում մարմինը նորից վերադառնում է իր ուղեծրի այն կետը, որտեղ նրան հաղորդվել է նշված արագությունը։ Վայրկյանում 11,2 կմ. և ավելի արագության դեպքում ուղեծիրը դադարում է փակ կոր լինելուց, նրա ծայրերն իրարից անջատվում են ու հեռանալով Երկրից, այդ մարմինն այլևս չի վերադառնում՝ շարժվելով պարաբոլական կամ հիպերբոլական ճյուղով։ Վայրկյանում 11,2 կմ. արագությունը կոչվում է երկրորդ տիեզերական արագություն։

1959 թվականի հունվարի 2-ին Սովետական Միությունից արձակված առաջին տիեզերական հրթիռի արագությունը հասցված էր վայրկյանում 11,4 կիլոմետրի, այսինքն հաղորդված էր մոտ 15 անգամ ավելի մեծ



արագություն, քան ժամանակակից հեռաձիգ հրանոթի արկի մաքսիմալ արագությունը։ Դրանից հետո շարժիչն անջատվեց և հրթիռը շարունակեց շարժվել իներցիայով։ Երկրի ձգողական ուժը հետզհետե պակասեցնում էր հրթիռի արագությունը, սակայն հեռանալու հետ միասին փոքրանում էր նաև այդ ազդեցությունը։

Առաջին տիեզերական հրթիռն անցավ Լուսնի մոտով նրանից 6000 կմ. հեռավորության վրա։ Լուսինը որոշ չափով ազդեց հրթիռի շարժման վրա, բայց նրա ձգողական ուժը թույլ լինելով չկարողացավ ամբողջովին գերել և հրթիռը շարունակեց իր ճանապարհը։ Այն ժամանակ, երբ հրթիռի հեռավորությունը մեզանից հասավ մոտ մեկ միլիոն կիլոմետրի, Երկրի և Լուսնի ձգողական ուժերը գրեթե նրա վրա չէին ազդում։ Հետագա շարժման վրա վճռական ազդեցություն ունեցավ Արեգակի ձգողական ուժը և այն սկսեց պտտվել Արեգակի շուրջը։ Սովետական մարդու ձեռքով ստեղծված այս նոր, արհեստական մոլորակի ունեցած հարաբերական արագությունը Երկրի նկատմամբ կազմում էր վայրկյանում 2 կմ. և հետևաբար նրա գծած էլիպսն ավելի մեծ չափսեր պետք էր ունենար։ Առաջին արհես-

տական մոլորակի միջին հեռավորությունը Արեգակից հավասար է 170 միլ. կմ. և մեկ լրիվ պտույտ Արեգակի շուրջը այն կատարում է մոտ 15 ամսվա ընթացքում։

Առաջին տիեզերական հրթիռի վերջին մասի կշիռը, առանց վառելանյութի պաշարի հավասար էր 1472 կիլոգրամի։ Նրանից անջատվեց 361,3 կգ. ընդհանուր կշիռ ունեցող գիտական և չափողական սարքավորումներով կոնտեյները, որի օգնությամբ պետք է կատարվեին մեր մթնոլորտի վերին շերտերում և տիեզերական տարածությունում տեղի ունեցող մի շարք երևույթների ուսումնասիրություն, ինչպես նաև ստացվեին Լուսնի վերաբերյալ որոշ տվյալներ։ Այդ բոլոր չափումների արդյունքները հատուկ ալիքի երկարության տակ աշխատող ռադիո սարքավորումների միջոցով հաղորդվեցին երկրագունդ։

Ամերիկայի Միացյալ Նահանգներում մեզանից դեռևս մի քանի ամիս առաջ փորձեր էին կատարում արձակելու տիեզերական հրթիռ։ Սակայն մի շարք ձախողված փորձերից հետո նրանց հաջողվեց տիեզերական հրթիռ արձակել երկու ամիս սովետական տիեզերական հրթիռի արձակումից հետո միայն։ Ամերիկյան արհեստա-



կան մոլորակի կշիռը կազմում էր ընդամենը 5,89 կիլոգրամ, նրան տրվել էր ավելի փոքր արագություն, դրա համար էլ այս երկրորդ մոլորակի ուղեծիրը իր չափերով ավելի փոքր էր։ Մեկ լրիվ պտույտ Արեգակի շուրջը այն կատարում է 13 ամսվա ընթացքում։ Գիտական ուսումնասիրությունների տեսակետից սրա առաջ ևս նույն խնդիրներն էին դրված, ինչ որ սովետական տիեզերական հրթիռի առաջ, սակայն ամերիկյան հրթիռը Լուսնի վերաբերյալ ոչ մի տվյալ չտվեց, քանի որ այն բավականին շեղ էր շարժվել՝ անցավ Լուսնից 59.000 կմ. հեռավորության վրա։

1959 թվի սեպտեմբերի 12-ին, երբ առաջին արհեստական մոլորակը գտնվում էր Արեգակից ամենամեծ՝ շուրջ 200 միլիոն կիլոմետր հեռավորության վրա, տիեզերական տարածության հետազոտության և միջմոլորակային թռիչքների նախապատրաստական ծրագրի համապատասխան, Սովետական Միությունից արձակվեց երկրորդ տիեզերական հրթիռը։ Այն նախատեսնված էր Լուսնի վրա ընկնելու։ Հրթիռի թռիչքը բաղկացած էր երկու մասից։ Առաջին մասում, երբ նա շարժվելով հետզհետե դուրս էր գալիս մեր մթնոլորտից և զարգացնում

համապատասխան արագություն, շարժիչի աշխատանքը ղեկավարվում էր Երկրից։ Անընդհատ ճշտվում էր և ուղղությունը և արագությունը։ Թռիչքի երկրորդ էտապում հրթիռը թռչում էր անջատված շարժիչով և, իհարկե, այլևս ղեկավարվող չէր։

Հրթիռի դիտումները հիմնականում կատարվում էին ռադիոտեխնիկական միջոցներով։ Սակայն ուղեծրի ճշգրտման համար անհրաժեշտ էր նաև օպտիկական դիտում այն ժամանակ, երբ հրթիռը դուրս էր եկել Երկրի մթնոլորտից։ Բայց շատ մեծ հեռավորության պատճառով անհնար էր տիեզերական հրթիռի անմիջական դիտումը։ Այդ նպատակով, ինչպես և առաջին տիեզերական հրթիռի արձակման ժամանակ, դրվել էր հատուկ սարքավորում, որի օգնությամբ պետք է ստեղծվեր արհեստական գիսաստղ։ Հայտնի է, որ նատրիումի ատոմային ընդերքում, երբ այն լուսավորվում է դեղնանարնջագույն լույսով, ապա այդ ատոմների կողմից նույն ալիքի երկարությամբ ուժեղ ռեզոնանսային ֆլուորեսցենցող ճառագայթում է տեղի ունենում։ Սեպտեմբերի 12-ին ժամը 21 անց 48 րոպեին հրթիռից տեղի ունեցավ նատրիումի գոլորշիների արտանետում և Արեգակի ճառագայթների տակ այն



պայծառ լույս արձակեց։ Հատուկ լուսազտիչներով այդ արհեստական գիսաստղը լուսանկարվեց ինչպես Սովետական Միության, այնպես էլ արտասահմանյան բազմաթիվ աստղադիտարանների ու դիտման կայանների կողմից։

Սեպտեմբերի 14-ին, Մոսկվայի ժամանակով 0 ժամ 2 րոպե 24 վայրկյանին սովետական երկրորդ տիեզերական հրթիռը հասավ Լուսնի մակերևույթին։ Այն ընկավ «Անդորրության ծովը» Լուսնի կենտրոնից 700 կիլոմետր դեպի վերև։

Սովետական երկրորդ տիեզերական հրթիռի վերջին մասի կշիռն էր 1511 կիլոգրամ, որից անջատվեց 390,2 կիլոգրամ կշիռ ունեցող գիտական սարքավորումներով ու սնուցման աղբյուրներով կոնտեյները։ Վերջինիս մեջ կային չափողական գործիքներ, էլեկտրական էներգիայի աղբյուրներ, ռադիոհաղորդիչներ և այլն։ Սովետական երկրորդ տիեզերական հրթիռը այնպես էր պատրաստված, որ նրա մեջ ոչ մի կենդանի միկրոբ չմնար։ Դրա նպատակն այն է, որ հետագայում երբ մարդիկ իջնեն Լուսնի վրա, նրանք ճիշտ գաղափար կազմեն այնտեղի իրականում գոյություն ունեցող օրգանիզմների բնույթի մասին, իսկ այդպի-

սի միկրոօրգանների գոյությունը, թեկուզ և ամենապարզագույն ձևով, որոշ գիտնականներ ընդունում են։ Նման վնասազերծող միջոցներ ձեռք կառնվեն նաև հետագայում այլ երկնային մարմինների վրա տիեզերական նավերի տեղափոխման ժամանակ։

Սովետական երկրորդ տիեզերական հրթիռը Լուսնին բախվեց վայրկյանում 3,3 կմ. արագությամբ։ Նրա մեջ տեղավորված էին նաև վիմպելներ, որոնց վրա նկարված էր Սովետական Միության գերբը և կար «Սովետական Միություն, 1959 թվականի սեպտեմբեր» մակագրությունը։ Դրված ամորտիզացիոն հարմարանքները հնարավորություն կտան Լուսնի հետ հրթիռի բախման ժամանակ այդ վիմպելները պահպանել կործանումից։

Սովետական երկրորդ տիեզերական հրթիռից ստացված տվյալները մանրամասնորեն մշակվում են։

1959 թվականի հոկտեմբերի 4-ին, Երկրի առաջին արհեստական արբանյակ արձակելու երկրորդ տարեդարձին, Սովետական Միությունից արձակվեց երրորդ տիեզերական հրթիռը։ Սովետական այս տիեզերական հրթիռի վերջին մասը առանց վառելանյութի կշռում է 1553 կիլոգրամ։ Նա իր հետ տա-



նում է միջմոլորակային ավտոմատ կայան։ Միայն չափողական ու ռադիոսարքավորումների և նրանց սնուցման աղբյուրների ընդհանուր կշիռը կազմում է 435 կիլոգրամ։

Սովետական ներկա միջմոլորակային ավտոմատ կայանը նախատեսված է գիտական ընդարձակ հետազոտություններ կատարելու համար։ Դա առաջին կայանն է, որի սարքավորումների աշխատանքը ղեկավարվում է Երկրից։ Արդյունքները տրվում են պորցիաներով, օրական մեկ անգամ, 2—4 ժամ տևողությամբ։ Չափումների, ինչպես նաև չափված արդյունքները Երկիր հաղորդելու համար օգտագործվում է ինչպես քիմիական, այնպես էլ արեգակնային մարտկոցներ։

Այս տիեզերական հրթիռի միջոցով հնարավոր կլինի ոչ միայն կարևոր տեղեկություններ ստանալ միջմոլորակային տարածություններում տեղի ունեցող զանազան երևույթների վերաբերյալ, այլև մեր այսպես կոչվող «մերձավորագույն» երկնային հարևանի մասին։ Տիեզերական հրթիռը, ինչպես և նրանից անջատված միջմոլորակային ավտոմատ կայանը այժմ շարժվում են ճշգրիտ, նախօրոք հաշվարկված ուղեծրով։ Նախատեսված էր, որ նրանք պետք է

շրջանցելիս Լուսինը վերջինից 7 հազար կմ. հեռավորության վրա և ուղղվեին դեպի Երկիր։ Միջմոլորակային ավտոմատ կայանը Լուսնից նվազագույն հեռավորության հասավ արձակվելուց մոտ 2,5 օր հետո՝ հոկտեմբերի 6-ի ժամը 17-ին։ Դրանից հետո նրա հեռավորությունը Լուսնից հետզհետե մեծացավ, իսկ արագությունը փոքրացավ։ Մաքսիմալ հեռավորության և մինիմալ արագության (վայրկյանում 0,4 կմ.) հասավ հոկտեմբերի 10-ին, որից հետո սկսեց շարժվել դեպի Երկիր։ Տիեզերական հրթիռը պտտվում է Երկրի շուրջը բավականին ձգված էլիպսով։ Նրա երկրամոտ կետը գտնվում է 47,5 հազար, իսկ երկրահեռ կետը 470 հազար կիլոմետր հեռավորության վրա։ Մեկ լրիվ պտույտ իր ուղեծրով նա կկատարի մոտ 15 օրում՝ անցնելով ավելի քան մեկ միլիոն կիլոմետր ճանապարհ։ Հրթիռի շրջանցումը Լուսնի մոտով հնարավորություն կտա բավականին տվյալներ ստանալու Լուսնի մակերևույթի նաև այն կեսի վերաբերյալ, որը միշտ մեր հակառակ կողմն է ուղղված։ Լուսնի մակերևույթի այդ մասը մինչև այժմ հնարավոր չի եղել ուսումնասիրել ոչ ռադիո և ոչ էլ օպտիկական միջոցներով։ Այժմ մենք հնարավորություն կունե-



նանք ստանալու նրա տոպոգրաֆիական մեծ մասշտաբի քարտեզը։

Հրթիռի ուղեծրի Լուսնի մոտ ընկած մասի ուսումնասիրությունը ճշգրիտ պատկերացում կտա Լուսնի սեղմվածության չափի մասին։ Լուսնի ուսումնասիրությունը կարևոր է ոչ միայն երկնային մարմինների մասին մեր գիտելիքների ճշտման, հետագա միջմոլորակային ճանապարհորդությունների հետ կապված զանազան հարցերի լուծման համար, այլև որոշ առումով այն հնարավորություն է տալիս նույնիսկ ավելի լավ ճանաչել մեր մոլորակը՝ երկրագունդը։ Օրինակ, երկրորդ տիեզերական հրթիռի միջոցով ստացված այն տվյալը, որ Լուսինը զուրկ է մագնիսական դաշտից, նոր լույս սփռեց երկրագնդի մագնիսական դաշտի առաջացման պրոբլեմի լուծման վրա։

Սովետական այս երեք տիեզերական հրթիռների արձակումը մեծ ներդրում էր ինչպես տիեզերքի ուսումնասիրման, այնպես էլ ոչ այնքան հեռու ժամանակում մարդկային անձնակազմով միջմոլորակային ճանապարհորդության բնագավառում։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 42-րդ տարեդարձը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ի՞նչ է Սովետական իշխանությունը, *Երկեր, հատոր 29, էջ 295—298, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պրոլետարիատի խնդիրների մասին տվյալ ռևոլյուցիայում, *Երկեր, հատոր 24, էջ 1—9, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթական խնդիրները, *Երկեր, հատոր 27, էջ 279—333, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Հոկտեմբերյան ռևոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ, *Երկեր, հատոր 33, էջ 37—48, Հայպետհրատ, 1951։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), Հայպետհրատ, 1953։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտե-



սության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, *զեկուցում տրված ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարում, Հայպետհրատ, 1959։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձը, *զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1958 թվականի նոյեմբերի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի բանաձևը, *Հայպետհրատ, 1959։*

## 2. Հայաստանում Սովետական իշխանություն հաստատելու 39-րդ տարեդարձը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների Ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, *Երկեր, հատոր 32, էջ 402—445, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ի՞նչ է Սովետական իշխանությունը, *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Զեկուցում տրված ՀԿՊ XX համագումարին, *Հայպետհրատ, 1959։*

3. Հաղթանակով դուրս գանք սոցիալիստական մրցությունից

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացումը յոթնամյակում, *ՀԿԿ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1959։*

Դեպի Հոկտեմբերի 42-րդ տարեդարձը, *նյութեր յոթնամյակի առաջին տարվա արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 10-ի համարում։*

Պարտիան կոմունիստական շինարարության նոր ճակատների է կոչում, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 7-ի համարում։*

Բոլոր ուժերը սոցիալիստական պարտավորությունների կատարման համար։ *Հայաստանի ԿԿ Կենտրոնական Կոմիտեի VIII պլենումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 16-ի համարում։*

Բամբակագործների մարտական խնդիրը, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 11-ի առաջնորդողը։*

Պարտավորությունների կատարումը պատվի գործ է, *հոդված, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 9-րդ համարում։*



4. Տիեզերական տարածության նվաճումը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՏԱՍՍ-ի հաղորդագրությունը Սովետական Միությունում երրորդ տիեզերական հրթիռի արձակման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 6-ի համարում։*

Սովետական երրորդ տիեզերական հրթիռի թռիչքի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 6-ի համարում։*

Մի նոր քայլ մարդու կողմից տիեզերական տարածության նվաճման գործում, *նյութեր երրորդ տիեզերական հրթիռի արձակման մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 7-ի համարում։*

5. Կազմակերպված անցկացնենք անասունների ձմեռային շրջանը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— *Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման հարցերը, ՍՄԿԿ XXI համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1959։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Գյուղատնտեսության հետագա վերելքը, *ՀԿԿ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1959։*

Նոր հաջողություններով դիմավորենք ՍՄԿԿ Կենտկոմի հերթական պլենումը, *«Հայաստանի կոլտնտե-*

*սական» ամսագրի 1959 թվականի 9-րդ համարի առաջնորդողը։*

## 6. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նոր հաջողություններ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական երկիրը հաջողությամբ լուծում է յոթնամյակի խնդիրները, *ճառ Ռոստովի մարզի Վյոշենսկայա ստանիցայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի սեպտեմբերի 2-ի համարում։*

ՍՍՌՄ արդյունաբերության 1959 թվականի երրորդ եռամսյակի և ինն ամսվա պետական պլանի կատարման արդյունքների մասին, ՍՍՌՄ Մինիստրների Սովետին առընթեր Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, *տպագրված Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 15-ի համարում։*

## 7. Ավելի շատ կուլտուր-կենցաղային ապրանքներ աշխատավորներին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեում և ՍՍՌՄ Մինիստրների Սովետում կուլտուր-կենցաղային և տնտեսական գործածության ապրանքների արտադրությունն ավելացնելու, ասորտիմենտն ընդլայնելու և որակը բարձրացնելու միջոցառումների մասին, *տպագրված*



*«Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 16-ի համարում։*

## 8. Աճում և ամրապնդվում է եղբայրական սոցիալիստական երկրների միասնությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— *Ճառ Պեկինում տեղի ունեցած* հանդիսավոր ընդունելության ժամանակ, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի տասնամյակի առթիվ, *1959 թվականի սեպտեմբերի 30-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 2-ի համարում։*

Անխախտ է սովետական և չին ժողովուրդների մեծ բարեկամությունը, *նյութեր Ն. Ս. Խրուշչովի Պեկին ժամանելու առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 1-ի համարում։*

ՉԺՈՒ ԷՆ-ԼԱՅ— *Ճառ* Չինական ժողովրդական ռեսպուբլիկայի տասնամյակի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 2-ի համարում։*

## 10. Սովետական կառավարության առաջարկը ընդհանուր և լրիվ զինաթափման մասին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ելույթ Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր ասամբլեայում, *1959*

*թվականի սեպտեմբերի 18-ին, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի սեպտեմբերի 20-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Մոսկվայի աշխատավորների միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի սեպտեմբերի 30-ի համարում։*

Պատմական այց, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի սեպտեմբերի 19-ի համարում։*

Հանուն ժողովրդի շահերի, հանուն նրա բարօրության, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի սեպտեմբերի 22-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

## ԲԱՑՎԱԾ Է
## «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի
## 1960 ԹՎԱԿԱՆԻ
## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

*1 ամիսը— 1 ռ. 50 կ.*

*6 ամիսը— 9 ռ.*

*12 ամիսը— 18 ռ.*

*Մեկ համարը 75 կոպեկ*

*ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ*

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 20** **1959 г.**

*ՎՖ 07641* *Պատվեր 690* *Տիրաժ 8565*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.*